բուն վրայ: Որո՞ւ օգտակար կրնայ ըլլալ այս կացութիւնը եթէ ոչ այն պետութեան որ կը սարքէ այս խաղերը եւ որ զէնքերով կը զօրացնէ իր պայթուցիկ քաղաքականութիւնը »:

× Սուրիոյ բոլոր թերթերը բուռն խմբագրականներ կը հրատարակեն Իրաքի մասին, ըսելով թէ դաւ մըլարած է բանակին դէմ, կոնակէն հարուածելու համար զայն: Մասնաւորապէս կը քննադատեն Նուրի Սայիտ փաշան, որ միշտ կը մնայ հաւատարիմ Պաղտատի Ուխտին: Բանակին ներկայացուցիչը կ՚ըսէ թէ բռնագրաւուած են արաբ քօյր պետութեան մը կողմէ ղրկուած զէնքեր, երբ Սուրիա կը պատրաստուէր օգնելու Եգիպտոսի ընդդէմ աշխարհակալութեան:

## ՀՈՒՆԳԱՐՆԵՐԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿԵՆ ԴԻՄԱԴՐԵԼ

Փեշթայի Բանուորներու Խորհուրդը 24 ժամ պայմանաժամ նշանակեց, պահանջելով կառավարութենէն որ վերադարձնէ նախորդ վարչապետը, Նակի: Կառավարութիւնը պաշտօնական զեկոյց մը հրատարակեց, պնդելով թէ Նակի ազատ կը պտտի Ռումանիոյ մէջ... Բանուորները արտօնութիւն խնդրած են Նակին տեսնելու պատուիրակութեան մը միջոցաւ, « ուր որ ալ գտնուի »: Բանուորական Խորհուրդը երբեք չի հաւատար թէ Նակի Ռումանիա գացած է իր ազատ կամքով: Բանուորները ամուր կառչած են իրենց բոլոր պահանջներուն եւ դոհացում կը պահանջեն անյապաղ: Գործադուլը կը շարունակուի, հակառակ բազմաթիւ ձերբակալութեանց եւ զանգուածային աքսորներու:

Եուկոսլաւիոյ կառավարութիւնն ալ ուժգին բողոքագիր մը ուղղեց Խ. Միութեան եւ Հունգարիոյ, պահանջելով ազատ արձակել Նակին եւ իր 43 ընկերները որոնք Փեշթայի դեսպանատունէն արձակուած էին այն պայմանաւ որ իրենց տուները վերադառնան:

Լեհական թերթերն ալ կը քննադատեն Նակիի եւ ընկերներուն առեւանգումը, մանաւանդ որ հունգարական կառավարութիւնը երաշխիքներ տուած էր անոնց ապահովութեան մասին:

× Վերջին տեղեկութեանց համաձայն փախստականներու թիւը հասած է 79.141ի: Արտագաղթը կը շարունակուի հակառակ արտակարգ ցուրտին: Օրական հազարէն մինչեւ երեք հազար փախստականներ սահմանը կ՚անցնին դանադան կէտերէ:

Ամբողջ աշխարհի մէջ յասում պատճառեց նախորդ վարչապետին եւ ընկերներուն առեւանգումը:

### ՎԵՐՋԻՆ ԺԱՄ

ԻՍՐԱՅԷԼ պիտի խզէ դիւանագիտական յարաբերութիւնները Թուրքիոյ հետ:

ԸՆԴՀԱՐՈՒՄ մը տեղի ունեցաւ Սէն Տընիի մէջ, երբ արմատական երեսփոխան մը ծաղկեփունջ մը կը դնէր Դիմադրական ճակատի յիշատակարանին վրայ, ի յարգանս Հունգար յեղափոխականներու: Համայնավարները կոխոտեցին ծաղկեփունջը: (Քաղաքապետն ալ համայնավար է):

400 ՀՈՒՆԳԱՐ փախստականներ եւս եկան Փարիզ:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՀՐԱՆԻՈՒԹԻ տաղնապին առթիւ նոր որոշումներ պիտի տրուին այս շաբթու: Վարչապետը կիրակի օր ճառ մը խօսելով ազդարարեց թէ կառավարութիւնը կը քննէ կացութիւնը եւ թէ կը վախցուի որ նոր սեղմումներ հաստատուին: Ուստի թելադրեց համբերութեամբ սպասել արդիւնքին: Քարիւղարաշխ մեքենաները չբանեցան շաբաթ կէսօրէն մինչեւ երկուշաբթի: Ուրիշ վառելանիւթերու մասին ալ կարգադրութիւններ պիտի ըլլան:

ՁԵԽԱԿԱՆ ՕԴԱՆԱՒ ՄԸ ջախջախուեցաւ Ցիւրիխի օդակայանին մօտ: Զոհերուն թիւը՝ 23 մեռեալ:— Իտալական օդանաւին զոհերուն մէջ կը գտնուէր տաղանդաւոր խմբավար մը, Կուիտօ Քանթելլի, 36 տարեկան, որ մեծ ապագայ կը խոստանար:

ՊՈՒՔՐԷՇԷՆ կը հեռագրեն թէ բաժնեչափ հաստատուեցաւ ալիւրի եւ շաքարի համար: Երկար պոչեր կը կազմուին խանութներու առջեւ: Շաքարը պիտի բաշխուի ամիսը 450 կրամ:

## ԽՆՋՈՅՔ ԻՍԻԻ ՄԷՋ

Դաշնակցութեան Օրուան առթիւ կիրակի, 2 Դեկտեմբեր:
Խրիմեան սրահը ժամը 15ին:
Գեղարուեստական բաժինին կը մասնակցին Տիկին Շաքէ Գալայճեան, Պ. Նշան Զիմէնեան, Օր. Քէշիշեան (արտասանութիւն), Պ. Սէյրան (թառ) եւ ուրիշներ:
ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է:

## ՅՈԲԵԼԵԱՆ ՀԱՅԿԱՆՈՅՇ ՄԱՌՔ Ի

Սալ Շօփէն (Փլէյէլ), Դեկտեմբեր 1
Շաբաթ գիշեր, ժամը 8.30ին
Նախաձեռնութեամբ Հայ Գրողներու Ընկերութեան եւ մասնակցութեամբ Մշակութային Միութեան եւ Համազգային Ընկերութեան եւ Ֆրանսահայ Լսարանին:
Հովանաւորութեամբ՝ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ:
Գրական ու գեղարուեստական ճոխ բաժին:
Կը խօսին Տիկին Պահրի (նախագահ), Տիկին Գարմէն, Տիկին Մառի Աթմաճեան, Յակոբ Տէր - Յակոբեան եւ Հր. Բալուեան:
Գեղարուեստական բաժինը նորութիւն մը կը բերէ փարիզահայ բեմին: Օր. Գոհարիկ Ղազարոսեան կը նուագէ՝ ընկերակցութեամբ Անիթա Սարգսեանի արտասանութեան, յօրինեալին երկու քերթուածները: Կ՚երգէ Տիկին Արուսեակ Ալպան: Թաւջութակ Պ. Նահապետ Ալալէմճեան: Ընթերցում՝ Պ. Տէվրիշեան:
Մուտքը 200 ֆրանք:
Տոմսերը կը ծախուին Բալուեան եւ Պարսամեան գրատուները եւ կիշէ:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս չորեքշաբթի գիշեր Քաֆէ Քառէի վերնայարկը: Դասախօս՝ Պ. Հր. Բալուեան: Նիւթը՝ Տիկին Հայկանուշ Մառքի գրական եւ հանրային գործունէութիւնը:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԱՐԼ.— Պ. Ե. Զատուրեան իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ Ամերիկայի եւ Պարսկաստանի բարեկամներուն որոնք բարեմաղթութիւններ ուղղած էին իր կնոջ երկարատեւ հիւանդութեան առթիւ եւ մասնաւորապէս Տէր եւ Տիկին Ա. Կիւլէսէրեանի որոնք իրենց ամենօրեայ այցելութեամբ կը մխիթարէին հիւանդը:



### ԾԱԽՈՒ ՏՈՒՆ

Մարսէյլ քաղաքին կեդրոնը՝ (Լոնշան – Լիպէրասիոն):
Մեկնումի պատճառաւ, ծախու է տուն մը (քօ - փրօփրիէթէ):
Երկու սենեակ եւ խոհանոց փողոցի վրայ (Ա. յարկ), կարասիներով:
Վճարումը կանխիկ:

×

Նոյն փողոցին մէջ հնակարկատի (կօշիկ) խանութ մը լաւ յաճախորդներով: Տեւական գործ: Դիմել՝
K. Antikian, 11 Rue Léon Bourgeois
Marseille (1e)



## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ տօնածառին հանդէսի թուականը ծնողներու փափաքին վրայ նշանակուած է Դեկտ. 16ին (փոխան 23ի) ժամը 4ին:
Կը ներկայացուի՝
«ՁԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ»
Արտասանութիւն, երգեր, խաղեր եւ մանկական պարեր:
26, Rue Troyon, Métro : Pont de Sèvres.

### ՆՈՒԷՐՆԵՐ

Ծանօթ հայ սպասուհին 2000 ֆր. կը նուիրէ զերասան Ա. Շահխաթունիի ֆոնտին: Ստանալ «Յառաջ»էն:

ՆԻՍ.— Ի վաղուց ննջեցեալ Մկրտիչ եւ Յովհաննէս Շալճեան եղբայրներու յիշատակին Տիկին Նաւարեան (ծնեալ Շալճեան) երկու հազար ֆր. կը նուիրէ Շաւիլլի եկեղեցւոյ շինութեան: (Ստանալ «Յառաջ»էն) եւ հազար ֆր. «Յառաջ»ի բարգաւաճման համար:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—
Զաւարեան ենթկ. չաբաթ 1 Դեկտ. ժամը 9ին:
Վռամեան ենթկ. չաբաթ, մէկ Դեկտեմբեր, ժամը 9ին:
Նիկոլ Դուման ենթկ. կիրակի, 2 Դեկտ. ժամը 3.30ին:
Սոյն ժողովները տեղի կ՚ունենան սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Ներկայ կ՚ըլլայ Շրջ. Կ. ներկայացուցիչը:

(Շար.)

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՀԱՃԸՆԻ Հայր. Միութեան մեծ պարահանդէսը Մարտ 24ին, Սէրքըլ Միլիթէրի սրահին մէջ:

Imp. Araxes - 46, rue Richer, Paris (9e)

